Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 11 1948

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

**Խմբագրության հասցեն.—** *Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 33—86։*

---

# ՊԱՏՎՈՎ ԿԱՏԱՐԵՆՔ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ ՏՎԱԾ ԽՈՍՏՈՒՄԸ

*Օրերս մեր մամուլում հրապարակվեց Հայկական ՍՍՌ կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, սովխոզների, ՄՏ կայանների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների հայրենասիրական ջերմ նամակը ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինին։*

*Հայաստանի գյուղատնտեսության բազմահազար աշխատավորները հայ ժողովրդի մեծ բարեկամ ընկեր Ստալինին գրած նամակում բուռն խանդավառությամբ զեկուցում են անցյալ գյուղատնտեսական տարում ձեռք բերած իրենց նվաճումների մասին։*

*«Թանկագին Իոսիֆ Վիսսարիոնովիչ.*

*Մենք, Հայկական ՍՍՌ կոլխոզնիկներս ու կոլխոզնիկուհիներս, սովխոզների, ՄՏ կայանների աշխատողներս և գյուղատնտեսության մասնագետներս,— ասված է նամակում,— զեկուցում ենք Ձեզ, մեր սիրելի հա-*





րըն ու առաջնորդին, որ իրագործելով Համ. Կ(բ)Պ Կենտկոմի փետրվարյան պլենումի որոշումը, Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը 1947 թվին կատարեց պետությանը հացահատիկ հանձնելու իր պարտավորությունները և գերակատարեց աշնանացանի պլանը»։

Քաջալերված անցյալ գյուղատնտեսական տարում ձեռք բերած նվաճումներով, Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը համակված աշխատանքային նոր ու բարձր խանդավառությամբ, հավաստիացնում է ընկեր Ստալինին, որ 1948 թվին մեր Ռեսպուբլիկան կավարտի ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանով նախատեսված տեխնիկական կուլտուրաների ցանքատարածության ընդլայնումը՝ հասցնելով բամբակի տարածությունը մինչև 15 հազար հեկտարի, ծխախոտինը՝ մինչև 10 հազար հեկտարի և շաքարի ճակնդեղինը՝ մինչև 4 հազար հեկտարի։ Բազմամյա խոտերի ցանքատարածությունը հասցվել է 75 հազար հեկտարի։ Ընթացիկ տարում կավարտվի լիակատար անցումը խոտադաշտային ցանքաշրջանառությանը։ Մի շարք իրրիգացիոն աշխատանքների ավարտման շնորհիվ 1948 թվականին Ռեսպուբլիկայի ոռոգ-



վող հողերի տարածությունը հնարավոր կլինի ավելացնել ավելի քան 4 հազար հեկտարով։

Ռեսպուբլիկայի ողջ աշխատավորությունը, և առաջին հերթին կոլխոզային գյուղացիությունը խորապես գիտակցում է, որ մենք դեռ պետք է մեծ աշխատանք կատարենք Հայաստանի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա ամրապնդման ասպարեզում, որը Սովետական իշխանության տարիներին բոլշևիկյան պարտիայի ղեկավարությամբ և անձամբ ընկեր Ստալինի հայրական հոգատարության շնորհիվ հասել է իսկական վերածնման։ Ուստի մանրակրկիտ կերպով հաշվելով իրենց հնարավորությունները, սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները վճռական խոսք են տալիս մեր առաջնորդին գործադրել բոլոր ջանքերը Ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունն էլ ավելի մեծ ծաղկման հասցնելու համար։

Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիությունն իր առաջ խնդիր է դրել բարձր բերք հավաքել վարելահողի մեծ տարածություններից։ Նրանք խոստանում են բոլոր ջանքերը գործադրել լիովին կենսագործելու երկրում գյուղատնտեսական մթերքների և հումքի առատություն ստեղծելու վե-

րաբերյալ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը։ Բազմաթիվ առաջավոր կոլխոզներ, հարյուրավոր բրիգադաներ և օղակներ ընկեր Ստալինին խոսք են տալիս՝ աննախընթաց հաջողությունների հասնել սոցիալիստական հողագործության բերքատվության և հանրային անասնաբուծության մթերատվությունը բարձրացնելու ասպարեզում։ Նրանք պարտավորվել են յուրաքանչյուր հեկտարից միջին հաշվով հավաքել 150—200 փութ հացահատիկ, 300—510 փութ բամբակի հումք, 100—150 փութ ծխախոտ, 3.000— 4.200 փութ շաքարի ճակընդեղ, 160—200 ցենտներ խաղող։

Անասնապահության առաջավորները խոսք են տվել յուրաքանչյուր ֆուրաժային կովից ստանալ 2000—3000 լիտր կաթ և լիովին պահպանել ստացած մատղաշը։

Նոր Բայազետի շրջանի «Սպարտակ» կոլխոզի Սոցիալիստական Աշխատանքի Հերոս ընկ. Սարգսյանի օղակը խոսք է տվել 15 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 170 փութ ցորենի բերք։

Ստեփանավանի ընկեր Ստալինի անվան կոլխոզի կթվորուհի ընկ. Սոնյա Դավթյանը խոսք է տվել իրեն ամրացված 10 կովից ստանալ և աճեցնել 10 հորթ և յուրաքանչյուր կովից կթել 3.000 լիտր կաթ։



Հոկտեմբերյանի շրջանի «Կարմիր Աստղ» կոլխոզի ընկ. Բուղաղյանի օղակը՝ 6 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից հանձնել 510 փութ բամբակի հումք։

ՄՏ կայանների աշխատողները խորապես գիտակցելով, որ ցանքատարածության ընդարձակումը և դաշտերի բերքատվության բարձրացումը զգալի չափով կախված է իրենց հաջող աշխատանքից, պարտավորվել են իջեցնել տրակտորային աշխատանքի ինքնարժեքը, տրակտորիստները խոստացել են գերակատարել արտադրական նորմաները, տնտեսել վառելանյութը, բարձրացնել տրակտորի արտադրողականությունը։ Սովխոզների աշխատողները պարտավորվել են ընդարձակել այգիները, հավաքել խաղողի և մրգի բարձր բերք։ Այսպիսիք են այն մըտածված ու որոշակի պարտավորությունները, որ ստանձնել են Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները ամբողջ երկրի առաջ, ընկեր Ստալինին գրած իրենց նամակում։

Աշխատանքային բուռն ոգևորության օրեր է ապրում կոլխոզային գյուղը։ Ամենուրեք լայն ծավալ է ստացել բարձր բերքի համար մղվող պայքարը։ Կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները, ՄՏ կայանների, սովխոզների աշխատողներն ու գյուղատնտեսության մասնագետները քրտնաջան աշխատանք են կատարում ցանքը ժամանակին ու բարձրորակ կատարելու, բերքահավաքը կազմ ու պատրաստ դիմավորելու համար։ Կոլխոզային գյուղը համաժողովրդական պայքարի է դուրս եկել ժամանակին ու պատվով կատարելու առաջնորդին տված խոստումը։

Մեծ են ագիտատորների անելիքները գյուղատնտեսական աշխատանքների այս պատասխանատու շրջանում։ Ագիտատորներն իրենց ամենօրյա մասսայական բացատրական աշխատանքի հիմքում պետք է դնեն Հայաստանի գյուղատնտեսության աշխատողների նամակը ընկեր Ստալինին։ Նրանք կոլխոզային գյուղացիության հիշողության մեջ ոչ միայն միշտ վառ պիտի պահեն ընկեր



Ստալինին տված խոստումը, այլև պետք է սոցիալիստական մրցության նոր վերելք ստեղծեն ու պայքարի մեջ ներգրավեն գյուղի ամեն մի աշխատավորի՝ այդ խոստումը պատվով կատարելու համար։

Առաջնորդին տված խոստումը լրիվին կատարելու համար պետք է պայքարել, որ բարձր բերք ստանան ոչ միայն առանձին կոլխոզներ, բրիգադներ ու օղակներ, այլև մեր Ռեսպուբլիկայի բոլոր կոլխոզները, բրիգադները և օղակները։ Բարձր բերքի բախտըն այժմ որոշվում է կոլխոզային դաշտերում. ագիտատորների խնդիրն է կենդանի խոսքով և անձնական օրինակով օգնել կոլխոզների վարչություններին կոլխոզային բոլոր ուժերը մասսայորեն ներգրավելու աշխատանքի մեջ։ Կոլխոզնիկի տեղն այսօր դաշտն է, ոչ մի կոլխոզնիկ դաշտից չպիտի բացակայի։ Աշխատանքային կարգապահության ամրացումը կոլխոզում, աշխօրերի մինիմումի կատարման համար իրական գործը, ցանքի բարձրորակ մշակումը և բերքահավաքի օրինակելի նախապատրաստումը,

—ահա թե ո՞րն է բարձր բերքի գրավականը այսօր։

Առաջնորդին տված խոստումը մեր գյուղատնտեսության աշխատավորների կողմից մի սրբազան երդում է սովետական ժողովրդի առջև. այդ խոստումը ճշտությամբ, ժամանակին ու օրինակելիորեն կատարելը մեր Ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորների և առաջին հերթին կոլխոզային գյուղի ամեն մի աշխատողի, ամեն մի հայրենասերի պատվի գործն է։

Պատվով կատարենք մեր սիրելի առաջնորդին տված խոստումը, նոր թափ հաղորդենք գյուղատնտեսության վերելքի հետպատերազմյան ստալինյան ծրագրի կատարման մեծ գործին։

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐԻՆ

# ՄԻԽԱՅԻԼ ԻՎԱՆՈՎԻՉ ԿԱԼԻՆԻՆԸ ՈՐՊԵՍ ԲՈԼՇԵՎԻԿՅԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԲՈՑԱՇՈՒՆՉ ԱԳԻՏԱՏՈՐ

Երկու տարի առաջ, 1946 թվի հունիսի 3-ին, դադարեց բաբախելուց ռուս մեծ ժողովրդի հարազատ զավակ, բոլշևիկյան պարտիայի և Սովետական պետության ականավոր գործիչ, Լենինի-Ստալինի հավատարիմ զինակից Միխայիլ Իվանովիչ Կալինինի սիրտը։ Սքանչելի է եղել մեծ ռևոլյուցիոների, մարդկության երջանիկ կյանքի համար մղվող պայքարի անխոնջ մարտիկի կյանքը։ Նրա ամբողջ կյանքն ու գործունեությունն անխզելիորեն կապված են եղել մեր բոլշևիկյան փառապանծ պարտիայի պատմության հետ։

Մ. Ի. Կալինինը իր ռևոլյուցիոն-պարտիական գործունեության հենց առաջին շրջանից անմիջականորեն աշխատել է բոլշևիկյան պարտիայի ստեղծողներ Լենինի և Ստալինի հետ և նրանց ղեկավարությամբ։ Ընկ. Կալինինն այդ մասին ասում է. «Իմ կյանքի ամբողջ պատմությունը, իսկ ըստ էության և

բանվոր դասակարգի ամբողջ պատմությունը այն է, որ մենք ապրում և պայքարում ենք Լենինի և Ստալինի ղեկավարությամբ... Պայքար մղել հանուն կոմունիզմի՝ նշանակում է հետևել Ստալինին։ Ահա իմ նշած ուղին...»։

Միխայիլ Իվանովիչը լենինյան-ստալինյան տիպի ռևոլյուցիոներ էր։ Նա պայքարի մեջ վախ չուներ, նրան չէին սարսափեցնում ցարիզմի դաժանությունները, նա չէր վհատվում անհաջողություններից և չէր խոնարհվում դժվարությունների առաջ, այլ միշտ համարձակ, վճռական, արիաբար պայքարի մեջ էր մտնում խորը հավատով, որ պայքարը վերջիվերջո պետք է ավարտվի բանվոր դասակարգի և բոլոր ճնշվածների հաղթանակով։ Այդ մասին է վկայում այն փաստը, որ 1899 թվականից մինչև 1916 թվականը Կալինինը ձերբակալվել է 14 անգամ։

Միխայիլ Իվանովիչը Լենինի-Ստալինի գաղափարների լավագույն պրոպագանդիստն ու ագիտատորն էր։ Որպես փորձված ու բոցավառ ագիտատոր, նա բոլշևիզմի ճշմարիտ խոսքը տանում էր դեպի մասսաները, դեպի ժողովուրդը և նրանց համախմբում բոլշևիկյան փառապանծ պարտիայի շուրջը, պայքարի հանում նրանց Լենինի-Ստալինի ան-



մահ գաղափարների կենսագործման համար։ Կալինինը որպես ագիտատոր, մշտապես ղեկավարվում էր ագիտացիայի հաջողությունն ապահովող որոշակի սկզբունքներով։ Նա, ամենից առաջ, նկատի էր ունենում, թե որտեղ է հանդես գալիս ինքը որպես ագիտատոր՝ բանվորների թե կոլխոզնիկների, ինտելիգենցիայի թե զինվորների, հասակավորների թե երիտասարդների, կանանց թե տղամարդկանց առաջ, ապա ըստ այնմ էլ կառուցում էր նյութը, հավաքում փաստերն ու օրինակները։ Կալինինը գտնում էր, որ ագիտատորը պետք է հաշվի առնի շրջապատը, պայմանները, մարդկանց տրամադրությունը, նրանց պահանջմունքները։ Եվ նա կարողանում էր գտնել այն նյութը, այն տոնը, արտահայտչական այն ձևերը, որոնք ամենից ավելի էին նպաստում նրան իր մտքերը պարզ ու հստակ կերպով հաղորդելու մասսաներին։ Նա օգտագործում էր ագիտացիայի բազմազան ձևեր, արտահայտչական տարբեր եղանակներ— դասախոսություն, զեկուցում, զրույց, վիճաբանություն, հարց ու պատասխան, դրավոր ելույթ և այլն. Նայած թե ինչ լսարանի հետ գործ ուներ, ինչ հարց էր ընտրել ագիտացիայի համար։ Միխայիլ Իվանովիչը կարողանում էր հարցերի

ընդհանուր խմբի մեջ տեսնել գլխավորը, կենտրոնականը և խոսելով այդ գլխավորի մասին, շեշտը դնելով դրա վրա, հարևանցիորեն պատասխանում էր նաև մյուս հարցերին։ Օրինակ, Հայրենական Մեծ պատերազմի տարիներին հանդես գալով պարտիական կազմակերպությունների քարտուղարների խորհրդակցությունում, նա հատուկ ուշադրություն դարձրեց այն բանի վրա, որ որոշ մարդիկ թերագնահատում են թիկունքի դերը թշնամու նկատմամբ հաղթանակն ապահովելու գործում և բացի այդ՝ պարտկազմակերպության մի քանի քարտուղարներ թիկունքում կատարվող արտադրական աննկուն աշխատանքի մեջ ոչինչ արտակարգ բան չեն տեսնում, պարտիական աշխատանք չեն համարում այդ և միակողմանիորեն կարծում են, թե հերոսություն կարելի է անել միայն ռազմաճակատում։ Կալինինը այդ հարցերին մոտեցավ հեռվից։ Նա հարց դրեց իր ունկնդիրների առաջ, թե ի՞նչն է համարվում կարևոր պայման, որ մարտիկը ռազմաճակատում արժանի լինի պարտիայի շարքերն ընդունվելու համար։ Տեղից բացականչեցին. «Հերոսությունը»։ Կալինինը անմիջապես կառչեց դրանից։ Ճիշտ է, հերոսությունը, քաջությունը, մարտական գործողությունը։ Սա-



կայն, կարծեք թե դա արտաքին տեսակետից պարտիական աշխատանք չէ։ Տեսնում եք, հերոսությունը, անձնվիրությունը պայքարում համարվում է կարևորագույն մոմենտ մարդկանց գնահատելու համար։ Հիմա եկեք անցկացնենք անալոգիա. եթե դուք գտնում եք, որ հերոսությունը և բարձր մարտական գործողությունները ռազմաճակատում հանդիսանում են պարտիական մեծ գործ, կոմունիստական գործ, ապա պետք է դուք համաձայնվեք և այն բանի հետ, որ արկերը, թնդանոթները, գնդացիրները, որ արտադրվում են թիկունքում— դա մեր իսկական գործն է, դա պարտիական գործ է, դա հերոսական գործ է, առանց դրան թշնամուն չես հաղթի։

Միխայիլ Իվանովիչը կարողանում էր փոքր հարցերի մեջ անգամ տեսնել սկզբունքային կողմը և մարդկանց ուշադրությունը բևեռել դրա վրա։ Օրինակ, պարտիական անդամավճարների ժամանակին վճարելու հարցը։ Թըվում է, թե դա սոսկ պրակտիկ-կազմակերպական հարց է։ Կալինինը, որպես ագիտատոր անդրադառնալով այդ հարցին, որոշակիորեն ցույց էր տալիս դրա սկզբունքային-պարտիական կողմը։ Նա ասում էր, որ այդ հարցը պետք է քննության առարկա դարձնել պարտիական կազմակերպությունում և ժա-

մանավին անդամավճար չմուծողին ասել, որ ձեր տված դրամը պարտիայի համար ֆինանսական տեսակետից առանձին նշանակություն չունի և բանը դրանում չէ, այլ բանը նրանումն է, որ դուք չեք մտածում պարտիայի մասին, դուք չեք մտածում պարտիականի պարտականությունների մասին, որոնք գրանցված են պարտիայի կանոնադրության մեջ։ Հարցի քննարկումը առաջ կբերի վեճ, իսկ դա հնարավորություն կտա պարտկազմակերպությանը շեշտը դնել սկզբունքայնության վրա և այդ փոքր փաստը դարձնել պարտիայի անդամ-թեկնածուների դաստիարակման միջոց։

Կալինինը համարձակ, հարձակողական տիպի ագիտատոր էր, նա չէր քաշվում իր ունկնդիրների առաջ նկարագրելու դրությունը այնպես, ինչպես նա կա, չվախենալով դժվարությունները ցույց տալուց։ Խոսելով դժվարությունների մասին, նա կուչ չէր գալիս դրանց առաջ, այլ համառորեն կարողանում էր գտնել այն միջոցները, որոնցով կարելի կլիներ կռվել ստեղծված դժվարությունների դեմ, հաղթահարելով դրանք, և այդ նույն բանը հասցնում էր ունկնդիրների գիտակցությանը և նրանց ակտիվ գործողության մղում։

Կալինինը գտնում էր, որ մարդիկ որպեսզի



համաձայն ագիտատորին, վստահեն նրան և նրա խոսքը կազմակերպող ու գործողության մղող ուժ ունենա, ագիտատորը պետք է մոտ կանգնի մարդկանց, վերևից չնայի նրանց վրա, ցույց չտա, թե ինքը շատ բան է իմանում նրանցից, որ ինքը ամենագետ է, իսկ նրանք ոչինչ չգիտեն։ Այդ տեսակետից նա անձնական ամենալավագույն օրինակ էր ցույց տալիս։ Նա դուրս էր եկել բուն ժողովրդի ծոցից և իր ողջ հոյակապ կյանքի ընթացքում երբեք չկտրվեց ժողովրդից, նույնիսկ այն ժամանակ, երբ նա գտնվում էր ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Նախագահի մեծ, պատասխանատու և պատվավոր պոստում։ Նա մշտապես կապ էր պահպանում ժողովրդի հետ, ծանոթ էր նրա կյանքին, նրա պահանջներին և մշտապես ջանում էր անել հնարավոր ամեն բան մարդկանց կյանքը էլ ավելի լավ ու գեղեցիկ դարձնելու համար։

Մ. Ի. Կալինինը մեծ տեղ էր տալիս ագիտատորի լեզվին։ «Լեզուն ագիտատորի համար—ամեն ինչ է» ասում էր նա։ Միխաիլ

Իլյանովիչը խոսում էր պարզ, հասկանալի լեզվով, փաստերով, օրինակներով, համոզմունքով: Նա սովորեցնում էր, թե ինչ վախենա միևնույն միտքը կրկնելուց, եթե այդ անհրաժեշտ է: Նա խիստ կերպով դեմ էր ագիտացիայի ժամանակ անհասկանալի, առավել ևս անիմաստ բառեր գործածելուն: Կալինինը, Լենինի և Ստալինի նման իր զրույցները ավելի աշխույժ, հետաքրքիր ու դիպուկ դարձնելու նպատակով համեմում էր դրանք պատմական փաստերով, գրականությունից վերցրած բանաստեղծություններով և ժողովրդական ասացվածքներով:

Նա իր անձնական ագիտատորական փորձից ելնելով խորհուրդ էր տալիս ագիտատորներին. «Կարդացեք Լենինի և Ստալինի երկերը, սովորեցեք ագիտացիա անել Ստալինի նման: Ընկեր Ստալինը շատ լավ ագիտատոր է: Ինչպե՞ս նա կարողանում է խոսել ժողովրդի հետ»: Ապա և խորհուրդ էր տալիս ագիտատորներին՝ ագիտացիայի համար մշտապես նյութ քաղել մեր սովետական



մամուլից, որովհետև մեր մամուլը ճշմարիտ կերպով է արտացոլում կյանքը, մեր մարդկանց, նրանց պայքարը հանուն կոմունիզմի: Սակայն խորհուրդ տալով օգտվել մամուլից, նա նախազգուշացնում էր, որ մամուլի նյութերը նույնությամբ չի կարելի ընդօրինակել, դա մի քիչ կաղկոնիի կլինի: Հարկավոր է այդ նյութերը մարսել, յուրացնել և ապա սեփական մտքերով ու խոսքերով վերարտադրել:

Ինչո՞ւմն էր Կալինինի մասսաների մեջ ունեցած համակրանքի գաղտնիքը: Նրանում, որ նա ինչի մասին որ խոսում էր կամ գրում —խորը կերպով հավատում էր դրան, դա համարում էր ամենաճշմարտացին: Նրանում, որ նա իր գործի վարպետն էր, լավատեղյակ էր նյութին, փաստերին, օրինակներին և դրանք օգտագործում էր որպես հատու զենք՝ պայմաններին համապատասխան: Նրանում, որ նա ճանաչում էր ժողովրդին, խոսում էր նրա կյանքի մասին, նրա գործերի մասին, մարդկանց համար պարզ, հասկանալի լեզվով: Նրանում, որ նա իր ամբողջ պայծառ կյանքը անդավաճան կերպով [illegible] ժո-





ղովրդի բարօրության գործին, Լենինի և Ստալինի մեծ գաղափարները կյանքում կենսագործելու գործին։

Միխայիլ Իվանովիչ Կալինինը հարազատ ու սիրելի է սովետական ժողովրդի բոլոր խավերին։ Նա Լենինի-Ստալինի մեծ պարտիայի անկուն զինվորն էր, մարքսիզմ-լենինիզմի անխոնջ ագիտատորն ու պրոպագանդիստը, մասսաների հմուտ կազմակերպիչը, ժողովրդի հարազատն ու մտերիմը։

Սովետական ժողովրդի սրտում միշտ վառ կմնա փայլուն ռևոլյուցիոների, բոցաշունչ ագիտատորի ու պրոպագանդիստի, բոլշևիկյան պարտիայի ու սովետական պետության ականավոր կառուցողի՝ Միխայիլ Իվանովիչ Կալինինի անձնվեր գործունեությունը, նա սովետական մարդկանց նորանոր սխրագործությունների կմղի հանուն մեր սոցիալիստական Հայրենիքի բարօրության ու հզորության։

Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

*ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ*

## ԱՆՇԵՂՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ԿՈԼԽՈԶԱՅԻՆ ԳՅՈՒՂԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ՊԼԱՆԸ

Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի և Լեռնականների ռեսպուբլիկայի կոմունիստ ընկերներին ուղարկած իր պատմական նամակի մեջ Վ. Ի. Լենինը 1921 թվականին մատնանշում էր, որ անհրաժեշտ է լայնորեն զարգացնել էլեկտրիֆիկացիան ու ոռոգումը, որպես ժողովրդական տնտեսության վերելքի հիմնական միջոցառումներ։

Մինչռևոլյուցիոն Հայաստանում մենք չունեինք էլեկտրիֆիկացված գյուղ, նույնիսկ մեր քաղաքներում՝ Երևանում ու Լենինականում հազվադեպ երևույթ էր էլեկտրականությունը։ Միայն Սովետական իշխանություն հաստատվելուց հետո, ղեկավարվելով Լենինի և Ստալինի ցուցումներով, Հայաստանի բոլշևիկները ձեռնամուխ եղան մեր երկրի բնական հարստությունների օգ-

տագործմանը և, առաջին հերթին, էլեկտրակայանների կառուցմանը։

Հայաստանը իր բնական պայմանների շնորհիվ հարուստ է էներգիայի աղբյուրների բոլոր տեսակներից ամենահարուստով՝ ջրային էներգիայով։ Մեր լեռնային գետերն ու գետակները, ջրառատ աղբյուրները, մեծ բարձրությունից թափվող ջրվեժները իրենց մեջ պարունակում են հսկայական էներգիա, որը կարող է օգտագործվել էլեկտրական էներգիա ստանալու համար։ Այդ գետերի ու գետակների վրա կառուցվել և կառուցվելու են խոշոր ու մանր հիդրոկայաններ, որոնք հնարավորություն կտան զարգացնելու արդյունաբերությունը քաղաքներում, էլեկտրիֆիկացիայի ենթարկելու գյուղատնտեսական պրոցեսները և վերակառուցելու մեր կենցաղը ավելի կուլտուրական հիմունքներով։

Արդյունաբերական ձեռնարկությունների կառուցմանը և քաղաքների էլեկտրիֆիկացմանը զուգընթաց, Հայաստանում զգալի աշխատանք է կատարվել գյուղերի էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Եթե մինչռևոլյուցիոն Հայաստանում չկար ոչ մի էլեկտրիֆիկացված գյուղ և ոչ մի գյուղական էլեկտրակայան, ապա 1948 թվականի հունվարի 1-ի տվյալներով Հայկական ՍՍՌ-ում 1043 կոլ-



խոզներից էլեկտրիֆիկացված է 303 կոլխոզ, որը կազմում է բոլոր կոլխոզների մոտավորապես 30 տոկոսը։ 45 Մեքենա-տրակտորային կայաններից ու Մեքենա-տրակտորային արհեստանոցներից էլեկտրիֆիկացված է 37-ը։ Ավարտված են 14 սովխոզների էլեկտրիֆիկացման աշխատանքները։

Մեր կոլխոզներն էլեկտրական էներգիայով ապահովելու համար կառուցված է 16 հիդրոկայան, 22 միկրոգէս, 14 ջերմային էլեկտրակայան։ Այդ բոլոր կայանների ընդհանուր կարողությունը կազմում է 3910 կիլովատ։

Ներկայումս Իլյիչի լամպեր են վառվում մեր Ռեսպուբլիկայի կոլխոզնիկների 46.650 տներում, էլեկտրիֆիկացված են 280 դպրոց, 270 գյուղական ակումբ և այլն։ Գյուղում էլեկտրական էներգիա երևալուն պես հնարավորություն ստեղծվեց գյուղի ռադիոֆիկացման, կինոֆիկացման, կուլտուր-լուսավորական աշխատանքներ կատարելու համար,, և առհասարակ բեկում առաջացավ կոլխոզնիկների ողջ կենցաղի մեջ։

Բայց գյուղական էլեկտրիֆիկացիայի հիմնական խնդիրն է՝ գյուղատնտեսության արտադրական պրոցեսների էլեկտրիֆիկացումը, որը մեզանում դեռ ինչպես հարկն է

չի ծախսված։ Գյուղատնտեսական պրոցեսների մոտավորապես 40 տոկոսը հնարավոր է էլեկտրիֆիկացնել, որը կտա բանվորական ուժի վիթխարի խնայողություն, կարագացնի արտադրության պրոցեսները և նույնիսկ տրակտորային աշխատանքի համեմատությամբ կէժանացնի 20—25 տոկոսով, կտա բանվորական ուժի 40 տոկոս խնայողություն։ Հաշիվները ցույց են տալիս, որ մեկ կիլովատտ էլեկտրական էներգիան կարող է փոխարինել 22—30 բանվորի աշխատանքին։

Մոսկվայի մարզի «Պուտ կ կոմունիզմու» կոլխոզն էլեկտրիֆիկացնելուց հետո, նրա անասնաբուծական ֆերմայում ազատվեց 450 աշխօր՝ քուսպ մանրացնելու պրոցեսից, 500 աշխօր՝ արմատները լվանալու պրոցեսից, 1700 աշխօր ավտոմատիկ ջրման պրոցեսից։ Այսպիսով ընդամենը անասնաբուծության մեջ տնտեսվեց 6000 աշխօր, իսկ կովերի կաթնատվությունը բարձրացավ 15 տոկոսով, որի հետևանքով կոլխոզը 40 հազար լիտր ավելի կաթ ստացավ։ Դադարեցին անասունների մրսելուց առաջացող հիվանդությունները, կաթն սկսեցին պաստերիզացիայի ենթարկել, աշխատանքը դարձավ անհամեմատ ավելի հեշտ և մաքուր։

Այսպիսի շատ օրինակներ կարելի է բե-



բել։ Մեզ մոտ, Հայաստանում գյուղատնտեսական պրոցեսների էլեկտրիֆիկացման էֆեկտիվությունը պարզող հաշիվներ են կատարվել Ախտայի շրջանի Ցանտան գյուղի ընկեր Գր. Հարությունյանի անվան կոլխոզում, որը 1948 թվականին ամբողջապես էլեկտրիֆիկացվելու է։ Հիմնական պրոցեսների էլեկտրիֆիկացումից, ինչպես օրինակ՝ էլեկտրական կալսումը, հացահատիկի աղալը, կերի պատրաստումը, ֆերմաների ջրամատակարարումը, հացահատիկի զտումը, ոչխարների էլեկտրական խուզումը, ինչպես և օժանդակ շենքերի էլեկտրիֆիկացիան,— կոլխոզը կտնտեսի մոտավորապես 14 հազար աշխօր, 45 տոննա վառելանյութ, կալսման աշխատանքում կորուստները կկրճատվեն 170 ցենտներով։

Էլեկտրական կալսման ժամանակ, բացի բանվորական ուժի խնայողությունից, խիստ կկրճատվի նաև կալսման ժամկետը, մի բան, որ հատկապես կարևոր է մեր լեռնային շրջաններում, որտեղ ձմեռը շուտ է սկսվում։ Բացի դրանից, ազատվում է 3 տրակտոր՝ աշնանավարի և աշնանային գյուղատնտեսական այլ աշխատանքների համար։ Մեկ տոննա հացահատիկ աղալու համար ծախսվող վառելանյութի հենց միայն

արժեքը կազմում է 5 ռուբլի 40 կոպեկ, չըհաշված քաղաքից նրա փոխադրման ծախսերը։ Մինչդեռ էլեկտրականությամբ աղալու դեպքում մեկ տոննա հացահատիկի համար կծախսվի 1 ռ. 60 կոպեկի էլեկտրական էներգիա։ Ներկայումս Ֆանտան գյուղի կոլխոզը մոտոռային ալրաղացի աշխատանքի համար ծախսում է տարեկան 30 տոննա մոտոռային նավթ, 2 տոննա մեքենայի յուղ, 500 կիլոգրամ նավթ, և այդ վառելանյութի փոխադրման համար էլ ծախսում է ավելի քան 400 լիտր բենզին։ Էլեկտրիֆիկացիայի դեպքում կոլխոզն ազատվում է այդ բոլոր հոգսերից։

Էլեկտրականությունը մեծ չափով կիրառվում է նաև ոռոգման ու ճահիճների ցամաքեցման համար։ Այսպես, օրինակ, Այղր լճի նասոսային կայանը ոռոգման ջրով ապահովում է հարյուրավոր հեկտար հողեր, Կոտայքի նասոսային կայանը ջուր կմատակարարի Կոտայքի սարահարթի զգալի տարածության խաղողի այգիներին, Արարատյան դաշտավայրում էլեկտրիֆիկացված ջրտարները ցամաքեցնում են ճահիճները, իջեցնում են ստորերկրյա ջրերն ու բարելավում հողի պայմանները, և այլն։

Սակայն մեզ մոտ, Հայաստանում, էլեկտրական էներգիան դեռ շատ քիչ չափով է



օգտագործվում գյուղատնտեսական պրոցեսների մեջ։ Մի շարք շրջաններում, ինչպես օրինակ՝ Ազիզբեկովի, Ալագյազի, Կալինինոյի, Ապարանի, Ղուկասյանի, Ղափանի, Նոր-Բայազետի, Նոյեմբերյանի և Մարտունու շրջանները, մինչև այժմ հարկ եղած ուշադրություն չեն դարձնում գյուղական էլեկտրիֆիկացիային, որի հետևանքով այդ շրջաններում էլեկտրիֆիկացված է կոլխոզների 1—7 տոկոսը։

Գյուղում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու, գյուղատնտեսության ընդհանուր վերելք ապահովելու և կենցաղի մեջ կուլտուրան արմատավորելու նպատակով, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումը ընդունեց Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման 1948, 1949 և 1950 թվականների պլանի մասին ծավալուն որոշում։ Այդ ծրագրի համաձայն, 1948 թվականին էլեկտրիֆիկացվելու է 250 կոլխոզ, որի համար կառուցվելու են 24 հիդրոկայան ու միկրոԳԷՍ, 256 շրջանային ենթակայան և գյուղական տրանսֆորմատորային կիոսկ, անցկացվելու են 1087 կիլոմետր հաղորդման էլեկտրական գծեր, որոնք պահանջում են 26 միլիոն 333 հազար ռուբլու ներդրում։

1949 թվականին էլեկտրիֆիկացվելու է 263 կոլխոզ, որի համար կառուցվելու են 19 հիդրոկայան ու միկրոԳԷՍ, 263 շրջանային ենթակայան և գյուղական տրանսֆորմատորային կիոսկ, 1299 կիլոմետր հաղորդման էլեկտրական գծեր։ Այդ աշխատանքների համար նախատեսված է մոտավորապես 45 միլիոն ռուբլի։

1950 թվականին լրիվին ավարտվելու է Հայաստանի կոլխոզների էլեկտրիֆիկացիան։ Այդ թվականին նախատեսվում է էլեկտրիֆիկացնել մնացած 253 կոլխոզները, որի համար կառուցվելու են 33 հիդրոկայան ու միկրոԳԷՍ, 234 շրջանային ենթակայան և գյուղական տրանսֆորմատորային կիոսկ, 1125 կիլոմետր հաղորդման էլեկտրական գծեր։ 1950 թվականին կատարվելիք աշխատանքների համար սահմանված է 32 միլիոն 564 հազար ռուբլի։

Էլեկտրիֆիկացիայի այս պլանը հաջողությամբ իրագործելու նպատակով, պետությունը վարկավորում է սուղ միջոցներ ունեցող կոլխոզներին՝ կառուցվող էլեկտրակայանի ծախսերի 75 տոկոսի չափով։ Կոլխոզների կողմից պետական վարկի մարումը կատարվելու է երրորդ տարվանից։

Այս միջոցառումները կիրառելու համար



պահանջվում են նյութական մեծ ռեսուրսներ և կադրերի պատրաստում։

Արհեստագործական ուսումնարաններում, Հայգյուղէլեկտրոյի և Հայէներգոյի սիստեմներում գործող հատուկ դասընթացների միջոցով, տեխնիկումներում և Պոլիտեխնիկական ինստիտուտում պատրաստվելու են մեծ թվով գյուղական էլեկտրիֆիկացիայի աշխատողների կադրեր։

Այս վիթխարի խնդրի հաջող կատարումը հնարավոր է միայն սոցիալիստական դաշտերի և արդյունաբերական ձեռնարկությունների աշխատավորների համատեղ ջանքերի շնորհիվ։ Անհրաժեշտ է, որ յուրաքանչյուր կոլխոզնիկ պարզ պատկերացնի էլեկտրիֆիկացիայի ողջ շահավետությունն ու կարևորությունը, և ինչպես հարկն է ձեռնամուխ լինի իր գյուղի էլեկտրիֆիկացման աշխատանքներին, որպես ամենաանհետաձգելի մարտական խնդիր։ Էլեկտրականությունը կուլտուրա է մտցնում գյուղը, և նա չի կարող հաշտվել անկուլտուրականության հետ։ Ուստի անհրաժեշտ է, որ այն թափանցի գյուղական կենցաղի բոլոր մանրուքների մեջ և լայնորեն ընդգրկի բոլոր արտադրական պրոցեսները։

Քաղաքային կազմակերպությունները

սկսել են շեֆային լայն օգնություն ցույց տալ կոլխոզներին։ Նրանք պետք է ակտիվ կերպով մասնակցեն նախագծեր կազմելու գործին, շինարարությունների կազմակերպմանը, նյութեր ու սարքավորում հայթայթելուն և գյուղատնտեսական բոլոր պրոցեսների էլեկտրիֆիկացման գաղափարի արմատավորմանը։

Այս գործի համար ամենակայուն մարտընչողը պետք է դառնա գյուղական ագիտատորը։ Անհրաժեշտ է լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը առանձին կոլխոզների միջև և իրական պայքար կազմակերպել ՀԿ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումի որոշումը՝ Հայաստանի կոլխոզների էլեկտրիֆիկացման պլանի մասին, անշեղորեն կենսագործելու համար։

Գ. ՓԵՐԻԽԱՆՅԱՆ
(Հայէներգոյի կառավարիչ)

---

# ԿԱԶՄԱԿԵՐՊԵԼ ԱԳԻՏԱՑԻՈՆ-ՄԱՍՍԱՅԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՀԱՅՐԵՆԱԴԱՐՁ ԱՐՏԵԼԱԿԱՆՆԵՐԻ ՄԵՋ

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետին կից Արդյունաբերական կոոպերացիայի Վարչության սիստեմի հարյուրավոր արտելներում աշխատում են մոտ 2300 հայրենադարձ, որը կազմում է այդ սիստեմում աշխատող բոլոր արտելականների մոտ 25 տոկոսը։ Ավելին, արտասահմանից ներգաղթած հայերի համար կազմակերպված են 12 նոր արտելներ և 31 նոր ցեխեր, ուր բացառապես աշխատում են հայրենադարձներ։

Օտարության մեջ դեգերող, չարքաշ ու վաղվա աշխատանքի համար անհույս հայ արհեստավորը այլևս ստիպված չէ մեջքը ծռել ուրիշի համար, իր գոյությունը պահպանելու համար այլևս կարիք չունի դռնեդուռ ընկնելու։ Սովետական երկրում հայրենադարձ արհեստավորը ապահովված է աշխատանքով, հոգում են նրա և նրա ընտանիքի

մասին, նրան հնարավորություններ են ստեղծված կառուցելու իր սեփական բնակարանը, գնահատում են նրա աշխատանքը, և բոլորի հետ համահավասար վայելում է նա Ստալինյան Կոնստիտուցիայով տրված բարիքները։

Բոլշևիկյան պարտիայի և սովետական կառավարության անսահման հոգատարությունը ներգաղթած հայերի նկատմամբ, ոգեշնչել է հայրենադարձ արտելականներին։ Նրանք գործով, իրենց լավագույն աշխատանքով են պատասխանում իրենց նկատմամբ ցուցաբերված հոգատարությանը։ Հայրենադարձ արտելականները ոչ մի ջանք չեն խնայում կատարելու իրենց հայրենասիրական պարտքը, ավելի շատ և բարձրորակ լայն սպառման ապրանքներ տալու երկրին։ Ստալինյան հնգամյա պլանը 4 տարում կատարելու համար մղվող համաժողովրդական պայքարում, արդեն իրենց արժանի տեղն են գրավում հայրենադարձները։ Բավական է միայն նշել, որ իրենց ստախանովյան աշխատանքի համար, արտելներում աշխատող 55 հայրենադարձ պարգևատրված են «Գերազանցիկի» կրծքանշանով և 6 հոգի՝ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի Պատվոգրով։



Երևանի «Արծաթագործ» արտելում աշխատողների մեծ մասը Իրանից, Հունաստանից, Ֆրանսիայից, ԱՄՆ-ից, Սիրիայից և Բուլղարիայից ներգաղթած հայեր են։ Արտելականները հաջողությամբ են կատարում իրենց խոստումը՝ տարեկան պլանը կատարել նոյեմբերի 7-ին։ Բոլոր հայրենադարձները կատարում և գերակատարում են իրենց առաջադրանքը։ Այսպես, օրինակ, երիտասարդ փորագրիչ Կոլյա Մարտիրոսյանը (Իրանից) իր ամսական պլանը կատարում է 200—260 տոկոսով և վաստակում է 1800—2100 ռուբլի աշխատավարձ։ Նույն ցեխի փորագրիչներ Արամ Հայրապետյանը և Մեսրոպ Համբարձումյանը իրենց պլանը կատարում են 150—200 տոկոսով և վաստակում 1700—2000 ռուբլի։ Ֆրանսիայից ներգաղթած վարպետ ոսկերիչ Արամ Կյուրեղյանի ղեկավարած բրիգադան պատրաստում է բարձրորակ, գեղեցիկ և նուրբ ոսկյա զարդեր։ ԱՄՆ-ից ներգաղթած Բյուզանդ Տրդատյանը և Վարդերես Պողոսյանը, որոնք չունեին մասնագիտություն, կոլեկտիվի օգնությամբ դարձել են փորագրիչ և հղկողներ։ Բուլղարիայից ներգաղթած ոսկերիչ Վարագդատ Բոյաջյանը, որը միևնույն ժամանակ սովորում է գիշերային միջնակարգ

գործում, ընտրվել է արտելի ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար։ Միայն ապրիլ-մայիս ամիսների ընթացքում, արտելում աշխատող 48 հայրենադարձներից ուղարկված են սանատորիա 1 հոգի և 10 հոգի էլ հանգստյան տուն։

Նման օրինակները բազմաթիվ են։

Կապիտալիստական շահագործումից և անարգանքի ծանր լծից ազատագրված հայ աշխատավորի համար սովետական երկրում նոր է ամեն ինչ։ Հայրենադարձներից շատերը դեռևս լրիվին չեն պատկերացնում սովետական պետական և հասարակական կառուցվածքը, ծանոթ չեն սովետական ժողովրդի հերոսական պայքարի անցած ուղուն և լրիվին չեն ըմբռնում մեր երկրի ու միջազգային կյանքի կարևոր իրադարձությունները։ Եվ օրինական է նրանց բուռն ձգտումը՝ սովորել ավելի շատ բան և կարճ ժամանակամիջոցում արժանի տեղ գրավել սոցիալիստական շինարարության առաջավորների շարքերում։

Հայրենադարձ հայերի այդ ազնիվ ու վեհ ձգտումների իրականացումը պետք է հանդիսանա նրանց մեջ աշխատող ագիտատորների հիմնական խնդիրը, նրանց հոգատարության առարկան։



Ուսանելի է Երևանի Մարտի 8-ի անվան Կարի արտելի ագիտատորների աշխատանքը։ Այստեղ աշխատող 31 ներգաղթողների համար պարտիական կազմակերպության կողմից առանձնացված ընկերները ամեն օր ցեխերում կատարում են քաղաքական-մասսայական մեծ աշխատանք։ Մեծ հետաքրքրությամբ են լսվում № 1 ցեխի ագիտատոր ընկ. Արփիկ Հովհաննիսյանի ամենօրյա զրույցները հայրենադարձների կողմից։ Իր հերթական զրույցը նախապատրաստելիս, նա միշտ հաշվի է առնում իր ունկնդիրների պահանջները, նրանց հանրակրթական և քաղաքական գիտելիքները, կենցաղն ու սովորությունները, միջազգային իրադարձությունները սերտորեն կապում է առանձնապես այն երկրներում տիրող դրության հետ, որտեղից եկել են իր ունկնդիրները։ Ընկ. Ա. Հովհաննիսյանի յուրաքանչյուր զրույցը, խոսքն ու բառը պարզ են ու համոզեցուցիչ։ Ագիտատորը ոչ միայն հետևում ու խրախուսում է հայրենադարձներին, այլև մշտապես հետաքրքրվում նրանց կյանքով, հաճախակի լինում է նրանց տներում և իր խորհուրդներով օգնում վճռելու նրանց հուզող հարցերը։ Արտելում հայրենադարձների համար կազմակերպված է նաև բաղնիք։

Ընկ. Արփիկ Հովհաննիսյանի աշխատանքը խրախուսելի է. այդպես պետք է աշխատեն մեր ագիտատորները նաև մյուս արտելներում: Մինչդեռ շատ ագիտատորներ հաճախ սահմանափակվում են միայն թերթի ընթերցանությամբ: Այդ շատ քիչ է. բոլշևիկյան կենդանի խոսքի տարածողը՝ ագիտատորը պետք է կազմակերպի բովանդակալի, քաղաքականապես հագեցված զրույցներ պարտիայի և կառավարության կարևորագույն որոշումների, մեր Հայրենիքի նվաճումների, սովետական մարդու բարոյական կերպարի, սովետական հայրենասիրության, հնգամյա պլանի, ՍՍՌՄ միջազգային դրության հարցերի մասին, այն սերտորեն կապելով արտադրության պլանների կատարման կոնկրետ խնդիրների հետ:

Ագիտատորի զրույցը պետք է լինի պարզ ու համոզեցուցիչ և կրի մարտական բնույթ: Զրույցի ընթացքում պետք է օգտագործել կյանքից, արտելի առաջավոր մարդկանց կենդանի օրինակներ: Ագիտատորը պարտավոր է համբերատար կերպով աշխատել այն հայրենադարձների հետ, որոնք ինչպես ասվեց, դեռևս լավ չեն պատկերացնում մեր կյանքն ու իրականությունը, երբեմն թյուր ու սխալ կարծիք ունեն այս կամ այն հարցի



նկատմամբ, և օգնի նրանց ճիշտ գնահատել փաստերն ու երևույթները:

Ագիտատորը ոչ միայն սոցիալիստական մրցության պրոպագանդիստ է, այլև կազմակերպիչ: Պետք է զրույցների ընթացքում ամեն կերպ մասսայականացնել մրցության առաջավորների, այդ թվում նաև հայրենադարձների աշխատանքի փորձը, ամեն կերպ հետևել ու օգնել նրանց կատարելու իրենց ստանձնած պարտավորությունները, խրախուսել մրցության առաջավորներին, պաշտպանել ամեն մի լավ նախաձեռնություն և վերջապես օգնել ետ մնացող հայրենադարձներին՝ հասնելու առաջավորներին: Այնինչ հաճախ կարելի է հանդիպել այնպիսի դեպքերի, երբ սոցիալիստական մրցության պայմանագիրը կնքելուց հետո ամիսներ շարունակ ոչ ոք չի հետևում, չի ստուգում ու ամփոփում մրցության արդյունքները: Պետք է վճռական պայքար կազմակերպել մրցությանը նման ձևական մոտեցման դեմ: Հայրենադարձ արտելականը մրցության հենց առաջին օրերից պետք է զգա սոցիալիստական մրցության անհաղթ ուժը: Դա ագիտատորների աշխատանքի անբաժանելի ու հիմնական հարցերից մեկն է:

Հայրենադարձների հետ աշխատող ագի-

տատորը պետք է ուշադիր և հոգատար լինի դեպի նրանց կուլտուրական-կենցաղային պահանջները: Լավ ագիտատորը պետք է գրագիտություն, մայրենի լեզվով խոսել սովորեցնի իր ունկնդիրներին, հետաքրքրվի նրանց կյանքով ու կենցաղով, իր խորհուրդներով և միջամտությամբ օգնի լուծելու նրանց հետաքրքրող հարցերը: Եվ այն դեպքում, երբ հայրենադարձը զգում է, որ ագիտատորը խոսում է համոզված, ճշմարիտ, որ ագիտատորը անկեղծորեն հետաքրքրվում է նրա աշխատանքով ու կյանքով, ապա նա սիրով ու ակտիվությամբ կմասնակցի կազմակերպվող յուրաքանչյուր զրույցին: Սովորաբար այն արտելներում, ուր հաջող են ընտրված ագիտատորների կադրերը, ուր բարձր է կատարվող քաղաքական ագիտացիայի գաղափարական մակարդակը, այնտեղ հայրենադարձներն ավելի ակտիվ կերպով են մասնակցում մեր երկրի հասարակական-քաղաքական և արտադրական կյանքին:

Վ. ՍԱՐԳՍՅԱՆ
Մ. ԲԱԼԱՍՅԱՆ

ՍՏԱԽԱՆՈՎԱԿԱՆՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԸ

# ԱՐՄԱՏԱՎՈՐԵՆՔ ՄԵՏԱՂԱՄՇԱԿՄԱՆ ԱՐԱԳԱՑՐԱԾ ՄԵԹՈԴԸ

Վերջերս Լենինգրադի Սվերդլովի անվան գործարանի անվանի խառատ ընկ. Բորտկևիչը հետաքրքիր և արժեքավոր նորամուծություն առաջարկեց մետաղամշակման արագացրած մեթոդ կիրառելու ուղղությամբ: Ընկ. Բորտկևիչի այդ նոր մեթոդը հնարավորություն է տվել նրան անհամեմատ բարձրացնելու մետաղահատման արագությունը՝ մեկ րոպեում այն հասցնելով մինչև 500—700 մետրի:

Բորտկևիչի առաջարկությունն այժմ լայն արձագանք է գտել Միության առաջավոր մետաղագործների շրջանում: Մոսկվայի, Լենինգրադի ու այլ քաղաքների գործարաններում մետաղամշակման հարյուրավոր վարպետներ արդեն սկսել են աշխատել Բորտկևիչի մեթոդով, զգալիորեն բարձրացնելով մետաղահատ դազգահի արտադրողականությունը:

Երբ ես իմացա ընկ. Բորտկևիչի մեթոդի մասին և ծանոթացա նրա էությանը, տեսա, որ դա խիստ արժեքավոր նորություն է և որոշեցի այն կիրառել իմ աշխատանքում։ Մեր գործարանի գլխավոր տեխնոլոգ ընկ. Միսակ Մնացականյանի անմիջական օգնությամբ ես ձեռնարկեցի Բորտկևիչի մեթոդի փորձնական գործադրմանը մեզ մոտ՝ գործիքային ցեխում։

Արագացրած մետաղահատման մեթոդի էությունն այն է, որ հատող գործիքին տրվեն օպտիմալ (ամենաբարենպաստ) անկյուններ, բարելավվի խառատային դազգահով մետաղահատման ռեժիմը և բարձրացվի հատման արագությունը։ Ընկ. Բորտկևիչն այս հիմնական նպատակին հասնելու համար, կատարելապես տիրապետելով շըրջատաշ դազգահին, ընտրել է դետալների մշակման ռացիոնալ հերթականություն, որը նրան հնարավորություն է տալիս առավել արդյունավետ օգտագործելու ժամանակը և բարձրացնելու արտադրողականությունը։

Գլխավոր տեխնոլոգ ընկ. Մնացականյանը, ընդառաջելով իմ նախաձեռնությանը, օգնեց ինձ՝ հատող գործիքը պատրաստելու Բորտկևիչի մեթոդով, տալով նրան օպտիմալ, դիմացկուն անկյուններ, որոնք երկար



աշխատելով տալիս են բարձր արտադրողականություն։

Հատման արագությունն ապահովելու համար, անհրաժեշտ էր ունենալ պտտման արագություն, մի բան, որ մենք ձեռք բերեցինք դազգահի պատվանդանի (ֆունդամենտի) ամրացումով, մոտորի կարողության մեծացմամբ և միաժամանակ ամրացնող փամփուշտի հավասարակշռման ու դազգահի վրա որոշ ծանրություններ ավելացնելու միջոցով նվազեցրինք դազգահի ցնցումների ու տատանումների գումարը։ Այդ էլ իր հերթին նպաստեց հատման արագությունը բարձրացնելուն զուգընթաց՝ հասնելու դետալի ճշգրիտ ու մաքուր մշակմանը։

Արագացրած մեթոդով իմ փորձնական աշխատանքի նախնական արդյունքները գոհացուցիչ են։ Այժմ արդեն հատման արագությունը մեկ րոպեում հասցրել եմ մինչև 300—400 մետրի։ Ներկայումս ես գլխավոր տեխնոլոգ ընկ. Մնացականյանի հետ միասին մշակում եմ մի շարք նոր միջոցառումներ՝ Բորտկևիչի արտադրական հաջողությանը հասնելու համար։ Այդ միջոցառումներից կարելի է թվել հետևյալները. նախ՝ ձեռք բերել հատող գործիքի նոր, ավելի լավ հղկիչ, որով ապահովվի կտրիչի մակերեսի

առավելագույն կոկումը, որը մեծ դիմացկունություն կտա արագացրած հատման պրոցեսում։ Այնուհետև՝ պատրաստել այնպիսի հարմարանքներ, որպեսզի կտրիչը սրվի ոչ թե ձեռքով, այլ այդ հարմարանքներով։ Միաժամանակ աշխատանք եմ կատարում շրջատաշ դազգահի պատվանդանը մեծացնելու և ամրացնելու ուղղությամբ, որպեսզի մետաղահատման առավելագույն արագության դեպքում նվազագույնի հասցնեմ դազգահի ցնցումներն ու տատանումները, որը նույնպես կնպաստի դետալի մակերեսի ճիշտ և հարթ լինելուն։

Մեր գործարանի պարտիական կազմակերպության նախաձեռնությամբ իմ աշխատանքի նախնական արդյունքները քննության դրվեցին գործարանային արտադրական խորհրդակցությունում, որտեղ մասնակցում էին գործարանի ինժեներա-տեխնիկական անձնակազմը, ցեխերի պետերը, վարպետներն ու առաջավոր ստախանովականները։ Այս խորհրդակցությանը մի քանի ցեխերի պետեր, ինչպես օրինակ 2-րդ ցեխի պետ ընկ. Ժ. Առաքելյանը, 3-րդ ցեխի պետ ընկ. Աբր. Մնակյանը խոստացան Բորտկևիչի մեթոդը կիրառել նաև իրենց ցեխերում։ Այժմ գործիքային ցեխում



պատրաստվում են հատող համապատասխան գործիքներ, որպեսզի այս ցեխերում ապահովվի Բորտկևիչի մետաղահատման արագացրած մեթոդին անցնելը։ Իսկ ես էլ մտածում եմ նոր, համապատասխան անկյուններ գտնել, որոնք առավել արդյունավետ լինեն չուգունի արագացրած մշակման համար։

Արագացրած մետաղահատման մեթոդով աշխատելու շնորհիվ ձեռք բերած իմ առաջին հաջողությունները չեն հանգստացնում ինձ, այլ ավելի են պարտավորեցնում համառորեն աշխատելու, կատարելապես տիրապետելու դազգահին և ընկ. Բորտկևիչի օրինակով հասնելու մետաղահատման առավելագույն արագությանը։

Մեր Ռեսպուբլիկայի մետաղամշակման արդյունաբերության ձեռնարկությունների աշխատողները լայն կերպով կիրառելով ու արմատավորելով ընկ. Բորտկևիչի մեթոդը, կհասնեն աշխատանքի արտադրողականության առավել բարձր ցուցանիշների և դրանով իսկ կօգնեն երկրին, հետպատերազմյան ստալինյան հնգամյակը չորս տարում կատարելու գործում։ ՍԱՐԳԻՍ ՄԿՐՏՉՅԱՆ,

(Ձերժինսկու անվան դազգահաշինական գործարանի ստախանովական խառատ)

# 1948 ԹՎԻ ՀՈՒՆԻՍ ԱՄՍՈՒՄ ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ՄԵՋ ԿԱԶՄԱԿԵՐՊՎՈՂ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ԹԵՄԱՆԵՐ, ՊԼԱՆՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

## I.

### ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԿՈԼԽՈԶՆԻԿՆԵՐԻ, ԿՈԼԽՈԶՆԻԿՈՒՀԻՆԵՐԻ, ՍՈՎԽՈԶՆԵՐԻ, ՄՏ ԿԱՅԱՆՆԵՐԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ԵՎ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԱՍՆԱԳԵՏՆԵՐԻ ՆԱՄԱԿԸ ԸՆԿԵՐ ՍՏԱԼԻՆԻՆ:

1. Հայկական ՍՍՌ կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների, սովխոզների, ՄՏ կայանների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների նամակը ընկեր Ստալինին— որպես Սովետական Հայաստանի գյուղատնտեսության բազմահազար աշխատավորների անհուն սիրո ու նվիրվածության դրսևորում Լենին-Ստալինի փառապանծ պարտիայի, Սովետական կառավարության, ժողովուրդների իմաստուն առաջնորդ ընկեր Ստալինի նկատմամբ:

2. Սովետական Հայաստանի կոլխոզային գյուղացիության կողմից 1947 թվականին բերքատվության բարձրացումը, պետությանը հացահատիկ հանձնելու



պարտավորությունների կատարումը և աշնանացանի պլանների գերակատարումը որպես ցայտուն օրինակ ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան Պլենումի որոշման իրագործման:

3. Ժողովրդական տնտեսության զարգացման հնգամյա պլանով նախատեսված տեխնիկական կուլտուրաների ցանքատարածության ընդլայնման պլանի կատարումը 1948 թվականին: Խոտադաշտային ցանքաշրջանառության լիակատար ավարտումը, ոռոգվող հողերի տարածության ավելացումը և իրրիգացիոն աշխատանքների ծավալումն ընթացիկ տարում:

4. Հայաստանի գյուղատնտեսության աշխատողների 1948 թվականին ստանձնած պարտավորությունները աշնանացան և գարնանացան հացահատիկային կուլտուրաների, կարտոֆիլի, ծխախոտի, բամբակի, շաքարի ճակնդեղի, բրնձի, խաղողի, հնդավոր և կորիզավոր մրգերի գծով, որպես վճռական գործոն մեր Ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսության հետագա զարգացման ու ամրապնդման գործում:

5. «Արարատ» և «Հայկոնսերվ» տրեստների սովխոզների 1948 թվականի ստանձնած պարտավորությունները՝ խաղողի, հնդավոր և կորիզավոր մրգի, խաղողի տնկարանների ընդարձակման գծով:

6. Ձիերի, խոշոր եղջերավոր անասունների, ոչխարների և այծերի գլխաքանակի աճը և յուրաքանչյուր ֆուրաժային կովի, ոչխարի մթերատվության բարձրացումը, ոչխարների մետիսացումը 1948 թվականին:

7. Ռեսպուբլիկայի ՄՏ կայանների աշխատողների պարտավորությունների՝ տրակտորային աշխատանքների ինքնարժեքի հետագա իջեցման, յուրաքանչյուր տրակտորիստի կողմից արտադրանքի հերթափոխային նորմաների կատարման, վառելանյութի խնայողության, կոմբայնային պարկի ժամանակին նախապատրաստման դերը, կոլխոզային դաշտերի բերքատվության բարձրացման գործում։

8. Գյուղատնտեսության վարպետների՝ Սոցիալիստական Աշխատանքի Հերոսների փորձի ուսումնասիրումը, սոցիալիստական մրցության լայն ծավալումը շրջանների, կոլխոզների, սովխոզների, ՄՏ կայանների, բրիգադաների, ֆերմաների և օղակների միջև որպես վճռական միջոց կոլխոզային գյուղացիության բարեկեցության բարձրացման, երկրին ավելի շատ հաց, միս, կաթ ու այլ գյուղատնտեսական մթերքներ և արդյունաբերությանը՝ հումք տալու գործում։

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Հայկական ՍՍՌ կոլխոզնիկների, կոլխոզնիկուհիների. սովխոզների. ՄՏ կայանների աշխատողների և գյուղատնտեսության մասնագետների նամակը ընկեր Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻՆ։ *«Սովետական Հայաստան», 4 հունիսի, 1948 թ.։*

ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1947 թվի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ *«Սովետական Հայաստան», 20 հունվարի, 1948 թ.։*



ՍՍՌՄ ՊԵՏՊԼԱՆԻ ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ ԼԻԱԶՈՐԻ ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման 1947 թվի պետական պլանի կատարման արդյունքների մասին։ *«Սովետական Հայաստան», 28 հունվարի, 1948 թ.։*

ԱՆԶՆՈՒՐԱՑ ԱՇԽԱՏԱՆՔՈՎ ԳՈՐԾԻ ՎԵՐԱԾԵՆՔ ԱՌԱՋՆՈՐԴԻՆ ՏՎԱԾ ԽՈՍՏՈՒՄԸ («Սովետական Հայաստանի» հունիսի 4-ի առաջնորդողը)։ *«Սովետական Հայաստան», 4 հունիսի 1948 թ.։*

## II.

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ՊԼԱՆԸ

1. Գյուղատնտեսության էլեկտրիֆիկացումը— հետպատերազմյան ստալինյան հնգամյակի տնտեսական-քաղաքական կարևոր խնդիրներից մեկն է։

2. Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության էլեկտրիֆիկացման ավարտումը 1950 թվականին— Հայաստանի կոլխոզնիկների և գյուղատնտեսության աշխատողների պատվի գործն է։

3. Էլեկտրոէներգիայի լայն կիրառումը գյուղատնտեսության արտադրական պրոցեսների մեջ— գյուղատնտեսության աշխատողների անհետաձգելի խնդիրն է։

4. Կոլխոզային գյուղի էլեկտրիֆիկացումը— հզոր

միջոց է գյուղատնտեսության արագ վերելքի, Հայաստանի կոլտնտեսային գյուղացիության բարեկեցության ու կուլտուրայի բարձրացման գործում։

5. Ինչպես է մեր կոլտնտեսում (սովխոզում, ՄՏ կայանում) ծավալվում էլեկտրիֆիկացումը, էլեկտրաէներգիայի գործադրումը գյուղատնտեսության արտադրական պրոցեսների և կենցաղի մեջ։

ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՕՐԵՆՔ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։ *Հայպետհրատ, 1946 թ.։*

ՕՐԵՆՔ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության վերականգնման և զարգացման 1946—1950 թ. թ. հնգամյա պլանի մասին։ *Հայպետհրատ, Երևան, 1946 թ.։*

Ա. Ա. ԱՆԴՐԵԵՎ.— ՀԵՏՊԱՏԵՐԱԶՄՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՄԻՋՈՑԱՌՈՒՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ, զեկուցում ՀամԿ(բ)Պ Կենտկոմի պլենումում։ *«Սովետական Հայաստան», 8 մարտի, 1947 թ.։*

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈԼԽՈԶՆԵՐԻ ԷԼԵԿՏՐԻՖԻԿԱՑՄԱՆ ՊԼԱՆԻ ՄԱՍԻՆ Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 32-րդ պլենումի 1948 թ. հունիսի 3-ի որոշումը։ *«Սովետական Հայաստան», 5 հունիսի, 1948 թ.։*

Հ. ՊՈՂՈՍՈՎ.— Կոլխոզների էլեկտրիֆիկացումը Ռեսպուբլիկայի պարտիական և սովետական կազմակերպությունների անհետաձգելի խնդիրն է։ *«Սովետական Հայաստան», 9 հունիսի, 1948 թ.։*



*III.*

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ ՊԱՅՄԱՆԱԳՐԵՐԻ ԿՆՔՈՒՄԸ ՌՈՒՄԻՆԻԱՅԻ, ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ, ԲՈՒԼՂԱՐԻԱՅԻ ՈՒ ՖԻՆԼԱՆԴԻԱՅԻ ՀԵՏ ԵՎ ՖԻՆԼԱՆԴԻԱՅԻ, ՌՈՒՄԻՆԻԱՅԻ ՈՒ ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ՌԵՊԱՐԱՑԻՈՆ ՎՃԱՐՈՒՄՆԵՐԸ ԿՐՃԱՏԵԼՈՒ ՄԱՍԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՈՐՈՇՈՒՄԸ ՆՈՐ ԱՎԱՆԴ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԳՈՐԾԻ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ։

1. *Բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության վերաբերյալ պայմանագրերի կնքումը Սովետական Միության և Ռումինիայի, Հունգարիայի, Բուլղարիայի ու Ֆինլանդիայի միջև։*

2. *Սովետական Միության պայմանագրերը իր արևմտյան հարևանների հետ— այդ երկրների անկախության և ՍՍՌՄ-ի արևմտյան սահմանների ամրապնդման երաշխիքն է։*

3. *Իսկական իրավահավասարությունը, հարգանքը մեծ և փոքր ժողովուրդների իրավունքների ու շահերի նկատմամբ— ՍՍՌՄ-ի և մյուս երկրների համագործակցության հիմքն է։*

4. *Բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրերը Սովետական Միության և Ռումինիայի, Հունգարիայի, Բուլղարիայի ու Ֆինլանդիայի միջև— կարևոր էտապ է հետպա-*

*տերազմյան Եվրոպայի խաղաղության կարգավորման գործում և հարված նոր պատերազմի հրձիգների պլաններին։*

*5. Ֆինլանդիայի, Ռումինիայի և Հունգարիայի ռեպարացիոն վճարումները նվազեցնելու մասին Սովետական կառավարության որոշումը— մի նոր, կարևոր ակտ է բարեկամական հարաբերությունների ու համագործակցության հետագա ամրապնդման՝ Սովետական Միության և այդ պետությունների միջև։*

*6. Ֆինլանդիայի, Ռումինիայի և Հունգարիայի ռեպարացիոն վճարումները կրճատելու մասին Սովետական կառավարության վերջնական որոշումը— որպես երաշխիք այդ երկրների տնտեսական ու քաղաքական ամրապնդման, ի հակադրություն եվրոպական երկրների տնտեսական ու քաղաքական ինքնուրույնությունը վերացնող «Մարշալլյան պլանի»։*

## ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ.— Ճառ ֆինլանդական կառավարական դելեգացիայի պատվին տրված ճաշկերույթում 1948 թվականի ապրիլի 7-ին: *«Սովետական Հայաստան», 13 ապրիլի, 1948 թ.։*

Սովետական Միության և Ռումինական ժողովրդական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրումը: *«Սովետական Հայաստան», 6 փետրվարի, 1948 թ.։*



Սովետական Միության և Հունգարական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրումը: *«Սովետական Հայաստան», 20 փետրվարի, 1948 թ.։*

Սովետական Միության և Բուլղարական ժողովրդական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրումը: *«Սովետական Հայաստան», 20 մարտի, 1948 թ.։*

Սովետական Միության և Ֆինլանդիայի միջև բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության պայմանագրի ստորագրումը: *«Սովետական Հայաստան», 8 ապրիլի, 1948 թ.։*

Նշանակալից ուղենիշ սովետա-ռումինական հարաբերությունների պատմության մեջ (*«Պրավդայի» փետրվարի 6-ի առաջնորդողը*)։ *«Սովետական Հայաստան», 7 փետրվարի, 1948 թ.։*

Թող ամրանա բարեկամությունը Սովետական Միության և Հունգարական Ռեսպուբլիկայի միջև (*«Պրավդայի» փետրվարի 20-ի առաջնորդողը*)։ *«Սովետական Հայաստան», 21 փետրվարի, 1948 թ.։*

ՍՍՌՄ-ի և Բուլղարիայի անխախտ դաշինքը (*«Պրավդայի» մարտի 20-ի առաջնորդողը*)։ *«Սովետական Հայաստան», 24 մարտի, 1948 թ.։*

Կարևոր էտապ սովետա-ֆինլանդական հարաբերությունների զարգացման ապա[illegible] (*«Պրավդայի»*



Գինը 50 կոպ.

*ապրիլի 8-ի առաջնորդողը)։ «Սովետական Հայաստան», 9 ապրիլի, 1948 թ.։*

Սովետական կառավարության որոշումը Ֆինլանդիայի ռեպարացիոն վճարումները պակասեցնելու մասին։ *«Սովետական Հայաստան», 5 հունիսի 1948 թ.։*

Սովետական կառավարության որոշումը Ռումինիայի ռեպարացիոն վճարումները կրճատելու մասին։ *«Սովետական Հայաստան», 9 հունիսի, 1948 թ.։*

Սովետական կառավարության որոշումը Հունգարիայի ռեպարացիոն վճարումները կրճատելու մասին։ *«Սովետական Հայաստան», 9 հունիսի, 1948 թ.։*

Սովետական կառավարության կարևոր որոշումը *(«Պրավդայի» հունիսի 9-ի առաջնորդողը)։ «Սովետական Հայաստան», 10 հունիսի, 1948 թ.։*

---

Պատասխանատու խմբագիր՝
Ա. ՔՈԹԱՆՋՅԱՆ

*ՎՖ 03593 Պատվեր № 435 Տիրաժ 9.100*
*Ստորագրված է տպագրության 18/VI 1948 թ.*
*Պոլիգրաֆ. և Հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան*

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
Блокнот Агитатора